Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 7 ԱՊՐԻԼ 1952

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.—*Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78*

---

# ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ ԱՄԵՐԻԿՅԱՆ ԹԵՐԹԵՐԻ ՄԻ ԽՈՒՄԲ ԽՄԲԱԳԻՐՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

Ամերիկյան պրովինցիալ թերթերի խմբագիրների մի խումբ, այդ թերթերի 50 խմբագիրների անունից դիմել է ընկեր Ստալինին չորս հարցերով, որոնց ընկեր Ստալինը տվել է ստորև բերված պատասխանները.

ՀԱՐՑ. Հանդիսանո՞ւմ է արդյոք երրորդ համաշխարհային պատերազմը ներկայումս ավելի մոտիկ, քան երկու կամ երեք տարի սրանից առաջ:

ՊԱՏԱՍԽԱՆ. Ո՛չ, չի հանդիսանում:

ՀԱՐՑ. Օգուտ կբերե՞ր արդյոք մեծ տերությունների ղեկավարների հանդիպումը:

ՊԱՏԱՍԽԱՆ. Հնարավոր է, որ օգուտ բերեր:







ՀԱՐՑ. Ներկա մոմենտը Դուք հարմա՞ր եք համարում Գերմանիայի միավորման համար:

ՊԱՏԱՍԽԱՆ. Այո՛, համարում եմ:

ՀԱՐՑ. Ի՞նչ հիմքի վրա է հնարավոր կապիտալիզմի և կոմունիզմի գոյակցությունը:

ՊԱՏԱՍԽԱՆ. Կապիտալիզմի և կոմունիզմի խաղաղ գոյակցությունը միանգամայն հնարավոր է համագործակցելու փոխադարձ ցանկության առկայության դեպքում, իր ստանձնած պարտավորությունների կատարման պատրաստակամության դեպքում, հավասարության և ուրիշ պետությունների ներքին գործերին չմիջամտելու սկզբունքի պահպանման դեպքում:

---

ՆՅՈՒԹԵՐ ԶԵԿՈՒՑՈՒՄՆԵՐԻ ԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ՍՏԱԼԻՆՅԱՆ ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅՈՒՆԸ ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ՆԿԱՏՄԱՄԲ

Պրոֆեսոր Յա. Ժուկովսկի

*Լենինի—Ստալինի պարտիան և Սովետական կառավարությունը մշտական հոգատարություն են ցուցաբերում ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի վերելքի նկատմամբ: Սովետական մարդիկ մեծագույն երախտագիտությամբ են հիշում ընկեր Ստալինի ժողովրդի նկատմամբ մեծ սիրով տոգորված հիանալի խոսքերը. «Ինչ վերաբերում է մեզ՝ Կենտկոմի անդամներիս, կառավարության անդամներիս, ապա մեզ համար չկա այլ կյանք, քան կյանք՝ մեր մեծ գործի համար, քան կյանք՝ պայքարելու ժողովրդի ընդհանուր բարեկեցության համար, բոլոր աշխատավորների, միլիոնավոր մասսաների երջանկության համար»:*

Սոցիալիստական հասարակարգի հաղթանակը մեր երկրում անսահմանափակ ասպարեզ է բացել արտադրողական ուժերի զարգացման համար, աշխատավորների բարեկեցության և կուլտուրայի անշեղ աճման համար։ Ժողովրդի բարեկեցության անընդհատ վերելքը՝ սոցիալիստական հասարակության օրենքն է։ Այդ օրենքում իր արտահայտությունն է գտնում սոցիալիզմի մեծագույն գերազանցությունը կապիտալիզմի հանդեպ։

Նորագույն, բարձր տեխնիկայի բազայի վրա տեղի ունեցող արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության անշեղ, հզոր աճը այն հաստատուն հիմքն է, որը պարտիային և կառավարությանը հնարավորություն է տալիս հետևողականորեն իրականացնել սովետական ժողովրդի նյութական բարեկեցության ու կուլտուրական մակարդակի բարձրացման քաղաքականությունը։

1951 թվականին ՍՍՌՄ արդյունաբերության համախառն արտադրանքը երկու անգամ գերազանցեց նախապատերազմյան 1940 թվականի մակարդակը և 1950 թվականի համեմատությամբ աճեց 16 տոկոսով։ Արդյունաբերության զարգացման այս-



պիսի բարձր տեմպեր չի ունեցել և չունի և՛ ոչ մի կապիտալիստական երկիր։ 1951 թվականին նոր հաջողություններ ձեռք բերվեցին կոլտնտեսությունների և սովխոզների սոցիալիստական հողագործության ու հանրային անասնաբուծության ասպարեզում։

Մեր սոցիալիստական երկրում ամբողջ ժողովրդական տնտեսության զարգացման հիմքում դրված են աշխատավորների շահերը։ Տարեցտարի մեզ մոտ աճում է ազգային եկամուտը, որը սովետական մարդկանց նյութական բարեկեցության ամենավառ և համընդհանուր ցուցանիշն է։ 1951 թվականին ՍՍՌՄ-ի ազգային եկամուտը, 1950 թվականի համեմատությամբ աճեց 12 տոկոսով։

Մանր արդյունաբերության և գյուղատնտեսության արագ աճը մեր պետությանը հնարավորություն է տալիս ընդլայնել թեթև և սննդի արդյունաբերությունը, ավելացնել անձնական սպառման առարկաների արտադրությունը։ Դրա շնորհիվ՝ ավելի ու ավելի լրիվ չափով է ապահովվում քաղաքի և գյուղի աշխատավորների մշտապես աճող պահանջների բավարարումը։

Սովետական մարդու նկատմամբ, աշխատավորների բարեկեցության ու կուլտուրայի

ընդհանուր վերելքի նպատակամամբ պարտիայի և կառավարության կողմից ցուցաբերվող անդուլ հոգատարությունը իր վառ արտահայտությունն է գտնում մասսայական լայն սպառման ապրանքների գները հետևողականորեն իջեցնելու մեջ։ Հետպատերազմյան տարիներին արդեն հինգ անգամ մանրածախ գների իջեցում է կատարվել։ Այդ բանը մեր երկրի բնակչությանը մի քանի հարյուր միլիարդ ռուբլու զուտ շահում է տվել։

Մանրածախ գների իջեցման շնորհիվ բարձրանում է սովետական ռուբլու գնողունակությունը, բարձրանում է բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը, կրճատվում են արդյունաբերական ապրանքներ գնելու համար գյուղացիների կողմից կատարվող ծախսերը, բարելավվում է թոշակառուների դրությունը։

Հետպատերազմյան ստալինյան հնգամյակի հաջող կատարման շնորհիվ մեր երկրում զգալիորեն գերազանցվեց ժողովրդական սպառման նախապատերազմյան մակարդակը։ 1951 թվականին այդ տեսակետից ևս նոր, մեծ առաջընթաց քայլ կատարվեց՝ 1950 թվականի համեմատությամբ 15 տոկոսով աճեց ապրանքների վաճառումը բնակչությանը։ Անցյալ տարի բնակչությանը



վաճառված միսն ավելացավ 32 տոկոսով, ձկնեղենը՝ 14 տոկոսով, կենդանական յուղը՝ 10 տոկոսով, բուսական յուղը՝ 40 տոկոսով, կաթը և կաթնամթերքները՝ 35 տոկոսով, շաքարը՝ 29 տոկոսով և այլն։ Չափազանց արագ տեմպերով աճում է լայն սպառման նաև այլ ապրանքների մատակարարումը սովետական մարդկանց։ Անցյալ տարի բնակչությանը բամբակե գործվածքներ վաճառվել է 18 տոկոսով ավելի, քան 1950 թվականին, մետաքսե գործվածքներ՝ 26 տոկոսով, կաշվե կոշկեղեն՝ 11 տոկոսով, կահույք՝ 50 տոկոսով, ռադիոընդունիչներ՝ 26 տոկոսով, կարի մեքենաներ՝ 29 տոկոսով, հեծանիվներ՝ 86 տոկոսով ավելի և այլն։

Սոցիալիստական արտադրության անընդհատ ընդլայնումը ապահովում է հասարակականորեն օգտակար աշխատանքի ներգրավելու երկրի ամբողջ աշխատունակ բնակչությանը։

Սովետական Միությունում չկան գործազուրկներ։ Կոլտնտեսային կարգերի հաղթանակը ընդմիշտ վերջ տվեց գյուղի քայքայմանը։ Սոցիալիստական արդյունաբերության և գյուղատնտեսության անշեղ վերելքը՝ շարունակ նորանոր բանվորական ձեռքեր է պահանջում։ Բանվորների և ծա-

ռայողների թիվը մեր երկրում հետպատերազմյան տարիներին աճեց 9 միլիոն 300 հազար մարդով և 1951 թվականին հասավ համարյա 41 միլիոնի։

Այդ նույն ժամանակ կապիտալիստական երկրներում աճում է գործազրկությունը, ավելանում է թշվառ, անօթևան մարդկանց բանակը։ Միայն Ամերիկայի Միացյալ Նահանգներում կա 16 միլիոն լրիվ և մասնակի գործազուրկ։ Կապիտալիստական երկրների գյուղատնտեսության մեջ տասնյակ միլիոնավոր գյուղացիներ դատապարտված են աղքատության ու քայքայման։

Արտադրության ավելացման և սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման գլխավոր աղբյուրը՝ աշխատանքի արտադրողականության մշտական ու արագ աճն է։ Հետպատերազմյան հնգամյակի տարիներին ՍՍՌՄ արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը նախապատերազմյան՝ 1940 թվականի համեմատությամբ աճեց 37 տոկոսով։ 1951 թվականին աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 10 տոկոսով ևս։ 1951 թվականի արդյունաբերական արտադրանքի աճի համարյա երկու երրորդականը ձեռք է



բերվել աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։

Գների իջեցման և, հետևաբար, աշխատավորների նյութական բարեկեցության աճման պարտադիր պայման է հանդիսանում արտադրանքի ինքնարժեքի իջեցումը։ 1951 թվականին արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի իջեցման պլանը գերակատարվեց, որը տվեց ավելի քան 26 միլիարդ ռուբլու տնտեսում։

ՍՍՌՄ աշխատավորների բարեկեցության վերելքը արտահայտվում է, ամենից առաջ, այն բանում, որ սիստեմատիկորեն բարձրանում է բանվորների ու ծառայողների դրամական և ռեալ աշխատավարձը, ավելանում են գյուղացիների եկամուտները։

1950 թվականին մեր երկրի բանվորների ու ծառայողների եկամուտների և գյուղացիների եկամուտների ընդհանուր գումարը 1940 թվականի համեմատությամբ, համադրելի գներով, աճեց 62 տոկոսով։ 1951 թվականին Սովետական Միության աշխատավորների եկամուտներն ավելացան 10 տոկոսով ևս։

Ամեն մի աշխատավորի աշխատավարձի բարձրացման համար՝ մեծ նշանակություն

ունի նրա որակավորման բարձրացումը։ Սովետական պետությունը, զարգացնելով և արտադրության մեջ արմատավորելով նոր տեխնիկան, հսկայական հոգատարություն է ցուցաբերում աշխատավորների որակավորումը բարձրացնելու նկատմամբ։ Միայն հետպատերազմյան տարիներին պետական աշխատանքային ռեզերվների սիստեմը պատրաստել է մոտ 4 միլիոն երիտասարդ որակյալ բանվորներ՝ արդյունաբերության զանազան ճյուղերի և տրանսպորտի համար։ Նույն այդ ժամանակ արտադրության մեջ անհատական-բրիգադային և դասընթացային ուսուցման միջոցով 38 միլիոն մարդ բարձրացրել է իր որակավորումը։ Ներկայումս մեր երկրում սովորում է (ներառյալ ուսման բոլոր ձևերը) 57 միլիոն մարդ։ Հաջողությամբ է կատարվում ընկեր Ստալինի առաջադրած հոյակապ խնդիրը՝ կուլտուրական ու կրթված դարձնել բոլոր բանվորներին և բոլոր գյուղացիներին։

Սովետական պետությունը, ի լրացումն աշխատավորների աշխատավարձի, հսկայական միջոցներ է ծախսում բանվորներին և ծառայողներին նպաստներ տալու, սոցիալական ապահովագրության վճարումներ



կատարելու և սոցիալական ապահովության կենսաթոշակներ վճարելու համար։ Աշխատավորները պետության հաշվին ստանում են սանատորիաների, հանգստյան տների և մանկական հիմնարկների ձրի և արտոնյալ ուղեգրեր, ձրի բժշկական օգնություն, ձրի ուսում և որակավորման բարձրացում։ Պետությունը նպաստներ է վճարում բազմազավակ և միայնակ մայրերին, թոշակ՝ սովորողներին և այլն։ Բանվորները և ծառայողները ամեն տարի վարձատրվող արձակուրդ են ստանում պետության հաշվին։ Այս ամենը բարձրացնում է Սովետական Միության բանվորների և ծառայողների աշխատավարձը՝ ավելի քան մեկ երրորդով։ 1951 թվականին մեր երկրի բնակչությունը այդ բոլոր վճարումների և արտոնությունների գծով պետության հաշվին ստացել է 125 միլիարդ ռուբլի։

Այն ժամանակ, երբ խաղաղ աշխատանքով զբաղված Սովետական Միությունում գներն իջնում են, ժողովրդի նյութական ու կուլտուրական կյանքի մակարդակը բարձրանում է, կապիտալիստական երկրներում գները բարձրանում են, ուժեղանում է աշխատավորների աղքատացումը։ Ամերիկայի

Միացյալ Նահանգների, Անգլիայի, Ֆրանսիայի և կապիտալիստական մյուս երկրների իմպերիալիստները, ծավալելով համաշխարհային երրորդ պատերազմի նախապատրաստումը, իրականացնելով սպառազինության կատաղի մրցավազք, բանվորների, գյուղացիների և ծառայողների վրա են բարդում շարունակ աճող պատերազմական ծախսերը։ Կապիտալիստական մոնոպոլիաները բնակչության մեծամասնության շահագործումը, քայքայումն ու աղքատությունն ուժեղացնելով՝ ամենաբարձր շահույթներ են ապահովում իրենց համար։

Ամերիկայի Միացյալ Նահանգներում ավելի քան երկուս ու կես անգամ բարձրացել է ապրուստի գինը՝ նախապատերազմյանի համեմատությամբ։ Միայն 1950 թվականի առաջին եռամսյակից մինչև 1951 թվականի հոկտեմբերը ԱՄՆ-ում պարենային ապրանքների գներն աճել են 21,4 տոկոսով։ Զգալիորեն բարձրացել են նաև արդյունաբերական ապրանքների գները։ Պաշտոնական, խիստ նվազեցված տվյալներով՝ Անգլիայում պարենային ապրանքների գները մեկ տարում բարձրացել են 15 տոկոսով, հագուստեղենինը՝ 20 տոկոսով։ Ֆրանսիա-



յում վերջին տարում ապրուստի գինը ավելացել է 27 տոկոսով։

Այդ պայմաններում կապիտալիստական կառավարությունները վարում են խիստ ցածր մակարդակի վրա գտնվող աշխատավարձի «սառեցման» քաղաքականություն։ Դրա հետևանքով՝ ամերիկյան բանվորների ռեալ աշխատավարձը արդեն 1950 թվականին կազմում էր նախապատերազմյանի հազիվ 67 տոկոսը։ 1951 թվականին տեղի ունեցավ ռեալ աշխատավարձի հետագա իջեցումը՝ հասնելով նախապատերազմյանի 60 տոկոսին։ Իսկ Ֆրանսիայում աշխատավորների ռեալ աշխատավարձը այժմ պակաս է նախապատերազմյանի նույնիսկ կեսից։

Մինչդեռ կապիտալիստների շահույթները հսկայական չափերի են հասել և շարունակում են աճել։ Վերջին 10 տարում ամերիկյան ամենախոշոր մոնոպոլիաների կապիտալները աճել են 2,3 անգամ։ Ռազմական պատվեր կատարող մոնոպոլիստների շահույթները 1951 թվականին աճեցին 25—35 տոկոսով։ Անգլիական կապիտալիստների շահույթները վերջին հինգ տարում ավելացան 89 տոկոսով։ Ֆրանսիայի կապիտալիստական խոշոր կոմպանիաների շահույթ-

ները երեք տարում աճել են համարյա 7 անգամ։

Կապիտալիստական երկրներում սպառազինության մրցավազքը տանում է դեպի քաղաքացիական արդյունաբերության կրճատումը։ Ամերիկայի Միացյալ Նահանգներում, օրինակ, միայն 1951 թվականի ինը ամսում տեքստիլ արդյունաբերության արտադրանքը կրճատվեց 17 տոկոսով, կաշվեղենինը՝ 15 տոկոսով։ Կապիտալիստական երկրներում կրճատվել է նաև գյուղատնտեսական արտադրությունը։ Անցյալ տարի ցորենի բերքը Անգլիայում պակասեց 17 տոկոսով, Ավստրիայում՝ 21 տոկոսով։

Ապրանքների գների աճումը, հարկերի ավելացումը, որոնք ԱՄՆ-ում խլում են բանվորների և ծառայողների աշխատավարձի 41 տոկոսը, իսկ Անգլիայում՝ 53 տոկոսը, ռեալ աշխատավարձի պակասեցումն ու աշխատավորների աղքատացումը առաջ են բերում ժողովրդի սպառման կրճատում։

Արդեն 1950 թվականին Անգլիայում նախապատերազմյան ժամանակվա համեմատությամբ մսի սպառումը պակաս էր 32 տոկոսով, ձկնեղենինը՝ 19 տոկոսով, յուղինը՝ 42 տոկոսով, պահածոներինը՝ 55 տոկոսով, շաքարինը՝ 22 տոկոսով։ Անցյալ



տարի դրությունն է՛լ ավելի վատթարացավ։ Մի քանի ամսում մսի սպառումը պակասեց 37 տոկոսով, պահածոներինը՝ 16 տոկոսով, ձվինը՝ 12 տոկոսով։ Շարունակ պակասեցվում են քարտերով տրվող առանց այն էլ չնչին նորմաները, քարտեր, որոնք մինչև այժմ էլ գոյություն ունեն Անգլիայում։ Այսպես, օրինակ՝ անցյալ տարվա սեպտեմբերից 25 տոկոսով պակասեցվել են յուղի ու պանրի նորմաները։

Կապիտալիստական երկրներում տնատերերը տարեցտարի շարունակ ավելացնում են բնակարանային վարձը, որի վրա բանվորական ընտանիքները ծախսում են իրենց աշխատավարձի 25-ից մինչև 40 տոկոսը։ Բանվորները հարկադրված են պատսպարվել նկուղներում, կիսաքանդ, խոնավ, փոքրիկ, առողջապահական պայմաններից զուրկ շենքերում։ ԱՄՆ-ում բնակարանային ֆոնդի մոտ 20 տոկոսը հետնաբակեր են։ Երկրի բնակչության համարյա մեկերրորդը՝ 48 միլիոն մարդ ապրում են հետնաբակերում։ Չնայած բնակարանային սոսկալի կարիքին, Տրումենի կառավարությունը շարունակ կրճատում է բնակարանային շինարարությունը, ավելացնելով երկրագնդի բոլոր ծայրե-

րում ռազմական բազաներ կառուցելու ծրագիրը։ Անգլիայում՝ միայն Լոնդոնում մոտ կես միլիոն մարդ կա, որ օթևան չունի։ «Աքսիոն» ժուռնալի տվյալներով 12 միլիոնի է հասնում այն ֆրանսիացիների թիվը, որոնք ապրում են ծայրահեղ աննպաստավոր պայմաններում։ Բնակարանային կարիքը՝ մինչև ուղն ու ծուծը նեխած կապիտալիստական սիստեմի անբուժելի խոցն է։

Սովետական Միությունում պարտիան և կառավարությունը հսկայական հոգատարություն են ցուցաբերում աշխատավորների բնակարանային պայմաններն ավելի ու ավելի բարելավելու համար։ Բնակարանի վարձը և մյուս կոմունալ ծախսերը սովետական բանվորական ընտանիքի բյուջեում կազմում են 4 տոկոսից ոչ ավելի։ Հետպատերազմյան հնգամյակի տարիներին Սովետական Միությունում կառուցվել և վերականգնվել են բնակելի շենքեր՝ ավելի քան 100 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ։ Բացի դրանից, գյուղական վայրերում վերականգնվել և կառուցվել են 2 միլիոն 700 հազար բնակելի շենքեր։ 1951 թվականին քաղաքներում և բանվորական ավաններում շահագործման են հանձնվել բնակելի շենքեր՝



27 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ, գյուղական վայրերում կառուցվել է մոտ 400 հազար բնակելի շենք։

Բնակարանային շափազանց մեծ շինարարություն է ծավալվել մեր Հայրենիքի մայրաքաղաքում՝ Մոսկվայում։ Եթե 1940 թվականին կառուցվել էր 392 հազար քառակուսի մետր, ապա 1951 թվականին կառուցվեց 735 հազար քառակուսի մետր բնակտարածություն։ Բացի դրանից, անցյալ տարի Մոսկվայում կառուցվեց 24 նոր դպրոցի շենք, 58 մանկապարտեզ և մանկամսուր։ Մոսկվայում վեր են խոյացել բարձրաբերձ շենքեր, որոնք հիացմունք են պատճառում իրենց չքնաղ ճարտարապետությամբ։ Վերջերս գործարկման հանձնվեց Մոսկվայի հիասքանչ մետրոյի նոր ճյուղը։

Սովետական Միությունում ստեղծված է բնակչության առողջապահության՝ աշխարհում ամենակատարելագործված սիստեմը։ Ժողովրդի բարեկեցության աճման և մեր առողջապահության հաջողությունների շնորհիվ՝ սովետական երկրում մահացությունը 1940 թվականի համեմատությամբ նվազել է կրկնակի չափով։ Էլ ավելի կրճատվել է մանուկների մահացությունը։ Արդեն մի քանի տարվա ընթացքում ՍՍՌՄ-ում բնակչության





տարեկան աճը գերազանցում է 1940 թվականի մակարդակը և կազմում է ավելի քան 3 միլիոն մարդ։

Այսպիսով, այն ժամանակ, երբ կապիտալիստական լագերում իմպերիալիստական մարդակերները զբաղված են մարդկության լավագույն մասը ոչնչացնելու և ծննդաբերությունը կրճատելու զանազան «գիտական» միջոցների հայտնագործությամբ, ՍՍՌՄ-ում պետության գլխավոր հոգսն է սոցիալիզմի երկրի ամենաարժեքավոր կապիտալի՝ մարդկանց բարեկեցությունն ու երջանկությունը։

Սովետական ժողովրդի էկոնոմիկայի և բարեկեցության վերելքին ուղեկցում է աշխատավորների կուլտուրայի արագ աճը։ 1949 թվականից մեր երկրում իրականացվում է անցումը ընդհանուր յոթնամյա կրթության։ 1951 թվականին բարձրագույն ուսումնական հաստատություններում և տեխնիկումներում սովորում էին 2 միլիոն 740 հազար մարդ, իսկ բարձրագույն ուսումնական հաստատություններն ու տեխնիկումներն ավարտեցին 463 հազար երիտասարդ մասնագետներ։ Մեր երկրում աշխատում են ավելի քան 5 միլիոն մասնագետներ՝ բարձրագույն կամ միջնակարգ տեխնիկական կրթությամբ և համարյա նույնքան



պրակտիկ մասնագետներ, որոնք աճել են արտադրության մեջ ու կրթություն են ստացել դասընթացներում՝ առանց աշխատանքից կտրվելու։

Սովետական Միության մեջ աշխատավորների սպասարկման նպատակին են ծառայում կուլտուրայի այնպիսի զորավոր միջոցներ, ինչպիսիք են՝ մամուլը, գրականությունը, կինոն, թատրոնը, որոնք սովետական մարդկանց դաստիարակում են կոմունիզմի ոգով։

Սովետական ժողովրդի և ամբողջ առաջադեմ մարդկության կյանքում գաղափարական մեծագույն իրադարձություն է հանդիսանում Վ. Ի. Լենինի Երկերի ժողովածուի վերահրատարակումը և ընկեր Ստալինի Երկերի ժողովածուի հրատարակումը։

1951 թվականին մեր երկրում հրատարակվում էր ավելի քան 7.800 թերթ և ավելի քան 1.400 ամսագիր։ Թերթերի օրական միջին տիրաժը հասավ 36 միլիոն օրինակի։

1951 թվականին Սովետական Միությունում կար ավելի քան 350 հազար ամեն տեսակի գրադարան, որոնց գրքերի թիվը անցնում է 700 միլիոնից։ Թե որքան վիթխարի են այդ թվերը, բավական է ասել, որ ցա-

րական Ռուսաստանում ընդամենը եղել է 12 հազար գրադարան՝ մոտ 9 միլիոն գրքով։

Բարձրացնելով սովետական ժողովրդի կուլտուրան, պարտիան ու Սովետական կառավարությունը աշխատավորներին անդուլ կերպով դաստիարակում են կոմունիստական գիտակցականության և ստեղծագործական բարձր ակտիվության ոգով, նրանց մոբիլիզացնում են լուծելու կոմունիստական հասարակարգի կառուցման պատմական խնդիրները։ Այն հսկայական քաղ-մասսայական և կուլտ-լուսավորական աշխատանքը, որ կատարվում է մեր երկրում, նպատակ ունի վերացնել կապիտալիզմի մնացուկները մարդկանց գիտակցության մեջ, որոնք խանգարում են մեր հաջող առաջընթացին։

Սովետական ժողովուրդը բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ հսկայական աշխատանք է ծավալել կոմունիզմի նյութա-արտադրական բազայի ստեղծման ստալինյան ծրագրի կենսագործման համար։ Վոլգայի և Դոնի, Դնեպրի և Ամու-Դարյայի վրա կառուցվում են աշխարհիս ամենախոշոր հիդրոէլեկտրակայանները, ջրանցքներն ու ոռոգիչ սիստեմները։ Հիդրոտեխնիկական



այդ հսկա կառույցումների շնորհիվ մեր երկիրը կստանա հսկայական քանակությամբ լրացուցիչ էժան էլեկտրաէներգիա, հացահատիկ, բամբակ, անասնապահական մթերքներ և այլն։ Այդ վիթխարի շինարարությունը ձեռնարկվել է ընկեր Ստալինի նախաձեռնությամբ, որը հայրական հոգատարություն է ցուցաբերում մեր Հայրենիքի բարօրության ու ծաղկման նկատառմամբ, սովետական մարդկանց աշխատանքը հեշտացնելու և կյանքը բարելավելու նկատառմամբ։

Բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ, Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի իմաստուն առաջնորդությամբ ՍՍՌՄ-ի ժողովուրդները հաջողությամբ լուծում են կոմունիստական շինարարության հոյակապ խնդիրները։ Սովետական մարդիկ անխոնջ եռանդով պայքարում են 1952 թվականի պետական պլանի կատարման ու գերակատարման համար, արտադրանքի որակը բարելավելու և ինքնարժեքն իջեցնելու համար։ Կոմունիզմի կառուցման վեհ նպատակը մեր ժողովրդին ոգեշնչում է աշխատանքային նորանոր սխրագործությունների՝ հանուն մեր սիրելի Հայրենիքի հզորության հետագա ամրապնդման։

---

# ԱՇԽԱՏԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ՆԿԱՏՄԱՄԲ ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅԱՆ ՄԻ ՆՈՐ ԱՐՏԱՀԱՅՏՈՒԹՅՈՒՆ

*Սովետական մարդկանց բարեկեցության նկատմամբ ստալինյան ջերմ հոգատարության նոր վառ արտահայտություն է հանդիսանում 1952 թվականի ապրիլի 1-ին հրապարակված ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումը՝ «Պարենային ապրանքների պետական մանրածախ գների նոր իջեցման մասին»։*

*Պարտիայի և կառավարության այդ պատմական որոշումը կրկին անգամ վկայում է այն հայրական ու անդուլ հոգատարության մասին, որ Սովետական կառավարությունը, Լենինի—Ստալինի պարտիան և անձամբ ընկեր Ստալինը ցուցաբերում են մեր երկրի աշխատավորների նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման նկատմամբ։*

*«Արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության ասպարեզում 1951 թվականին ձեռք բերված հաջողությունների, աշխատանքի արտադրողականության աճի և արտադրանքի ինքնարժեքի իջեցման կապակցությամբ, Սովետական կառավարությունը և ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն հնարավոր համարեցին 1952 թվականի ապրիլի 1-ից իրագործել մասսայական սպառման պարենային ապրանքների պետական մանրածախ գների նոր, թվով հինգերորդ իջեցումը»,— կարդում ենք ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի «Պարենային ապրանքների պետական մանրածախ գների նոր իջեցման մասին» որոշման մեջ։ Պարտիան և կառավարությունը, հենվելով սովետական էկոնոմիկայի հզոր վերելքի վրա, հետպատերազմյան վերջին վեց տարիների ընթացքում չորս անգամ իջեցրել են արդյունաբերական և պարենային ապրանքների պետական մանրածախ գները, որից բնակչության զուտ շահումը կազմում է 302 միլիարդ ռուբլի։ Պարենային ապրանքների պետական մանրածախ գների նոր, թվով հինգերորդ իջեցման հետևանքով բնակչությունը կստանա զուտ շահում ավելի քան 23 միլիարդ ռուբլի։ Դա միայն պետական մանրածախ առևտրի գծով։ Եթե նկատի ունենանք, որ պետական առևտրի գծով կա-*

տարված գների իջեցումը առաջ կբերի գների իջեցում նաև կոոպերատիվ և կոլտնտեսային առևտրի գծով, որից բնակչությունը կշահի առնվազն 5 միլիարդ ռուբլի, ապա գների նոր իջեցումից բնակչությունը կունենա ավելի քան 28 միլիարդ ռուբլի զուտ շահում։

Պարենային ապրանքների պետական մանրածախ գների նոր իջեցումով ավելի կկայունանա սովետական ռուբլին, կբարձրանա նրա գնողունակությունը, բանվորների, ծառայողների և ինտելիգենցիայի ռեալ աշխատավարձը, զգալի չափով կշահի կոլտնտեսային գյուղացիությունը, է՛լ ավելի կբարելավվի թոշակառուների դրությունը։

Գների նոր իջեցումը վերաբերվում է կենսականորեն անհրաժեշտ պարենային ապրանքներին՝ հացին, ալյուրին, բրինձին, յուղին, մսին և այլն։ Պարենային ապրանքների գների իջեցումը 10—30 տոկոսով՝ է՛լ ավելի կբարձրացնի սովետական ամեն մի ընտանիքի բարեկեցությունը։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և Համ. Կ(բ)Պ Կենտկոմի որոշմամբ միջին հաշվով 18 տոկոսով իջեցվում են նաև գրքերի, ներառյալ դասագրքերի, մանրածախ գները, որը մեծ չափով կնպաստի աշխատավորա-



կան լայն մասսաների կուլտուրական մակարդակի է՛լ ավելի բարձրացմանը։

Սովետական ժողովուրդը անհուն բերկրանքով և մեծ գոհունակությամբ ընդունեց ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումը պարենային ապրանքների պետական մանրածախ գների իջեցման մասին, որը ժողովրդի ընդհանուր բարեկեցության նկատմամբ պարտիայի և կառավարության հոգատարության մի նոր ցայտուն վկայություն է։ Արդյունաբերական ձեռնարկություններում, պետական հիմնարկներում, գիտական հաստատություններում և կոլտնտեսություններում գումարված բազմաթիվ ժողովներում սովետական մարդիկ իրենց անսահման շնորհակալությունն են հայտնում կոմունիստական պարտիային, Սովետական կառավարությանը, ընկեր Ստալինին մեր երկրի աշխատավորության նյութական դրության ու կուլտուրական մակարդակի բարձրացման նկատմամբ ցուցաբերվող մշտական հոգատարության համար, խոստանալով ոչ մի ջանք չխնայել մեր Հայրենիքի հզորության հետագա ամրապնդման համար։

Սովետական էկոնոմիկայի անշեղ աճի և աշխատավորների նյութական-կուլտուրական

բարեկեցության անընդհատ վերելքի մեջ ակնառու կերպով դրսևորվում են տնտեսության սոցիալիստական սիստեմի անվիճելի առավելությունները և գերազանցությունը տնտեսության կապիտալիստական սիստեմի նկատմամբ։ Սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքը, սովորեցնում է ընկեր Ստալինը, հանդիսանում է աշխատավորների աճող նյութական և կուլտուրական պահանջների առավելագույն ապահովումը, բարձր տեխնիկական բազայի վրա խարսխված սոցիալիստական արտադրության անընդհատ աճի ու կատարելագործման միջոցով։ Կապիտալիզմի հիմնական տնտեսական օրենքը, ընդհակառակը, կապիտալիստների կողմից բանվորների անլուր շահագործման, ուրիշ երկրների ժողովուրդների սարկացման ու թալանի, պատերազմի նախապատրաստության և էկոնոմիկայի միլիտարիզացիայի միջոցով մաքսիմալ շահույթ ստանալն է։

Ինչպես որ սոցիալիզմն աններևակայելի է առանց սովետական պետության կողմից ժողովրդի նյութական դրության բարելավման նկատմամբ ցույց տրվող ամենօրյա հոգատարության, այնպես էլ կապիտալիզմն աններևակայելի է առանց աշխատավոր



մասսաների աղքատացման, սովի, թշվառության և գործազրկության։

Ինչո՞վ բացատրել, որ կապիտալիստական երկրներում բնակչության ճնշող մեծամասնությունը գտնվում է մշտական կարիքի ու աղքատության մեջ։ Չէ՞ որ կապիտալիստական աշխարհի կառավարողները բոլոր տանիքներից աղաղակում են իրենց երկրների անսպառ հարստությունների մասին։ Դա բացատրվում է նրանով, որ կապիտալիստական երկրների կառավարությունները արտահայտում են ոչ թե բնակչության մեծամասնության, այլ մի խումբ կապիտալիստների շահերը, դրա համար էլ այդ կառավարությունները վարում են մասսայական սպառման արդյունաբերական ու պարենային ապրանքների գները պարբերաբար բարձրացնելու քաղաքականություն։

Կապիտալիստական երկրների աշխատավորության կյանքի պայմանները է՛լ ավելի են վատթարացել հատկապես ներկայումս, երբ ամերիկա-անգլիական իմպերիալիզմը տարված երրորդ համաշխարհային սպանդ սկսելու մոլուցքով, տենդագին կերպով նախապատրաստվում է պատերազմի, կազմակերպելով կատաղի սպառազինության մրցավազք, կրճատելով քաղաքացիական և ա-

առաջին հերթին մասսայական սպառման առարկաների արտադրությունը։ Իմպերիալիստների կողմից պատերազմի նախապատրաստման ամբողջ ծանրությունն ընկած է կապիտալիստական երկրների աշխատավոր մասսաների վրա, որոնք տառապում են գազանային շահագործումից, սովից, հարկային լծից, ինֆլյացիայից, թշվառությունից, գործազրկությունից և ընդհանրապես կյանքի խիստ թանկությունից։ Աշխատավորների աղքատացումը և կյանքի թանկությունը ուժեղացավ հատկապես ազատասեր կորեական ժողովրդի դեմ սկսված ամերիկյան ագրեսիայից հետո։

ԱՄՆ-ի աշխատանքի մինիստրության աշխատանքային վիճակագրության բյուրոյի նույնիսկ պաշտոնական փոքրացված տվյալների համաձայն գների միջին մակարդակը 1951 թվականի վերջին, նախապատերազմյան 1935—1939 թվականների գների միջին մակարդակի համեմատությամբ, կազմել է 234 տոկոս։ Չորս հոգուց բաղկացած ամերիկյան ընտանիքի համեստ կյանքի համար տարեկան անհրաժեշտ է 4000 դոլլար։ Սակայն տվյալները ցույց են տալիս, որ 1950 թվականին ամերիկյան ընտանիքի տարեկան եկամուտները կազմել են



2599 դոլլար։ Հետևապես ԱՄՆ-ի բնակչության մեծամասնությունը չունի ապրելու մինիմում պայմաններ։ Մինչդեռ բնակչության մեկ շնչին ընկնող ռազմական ծախսերը նախապատերազմյան 8 դոլլարի փոխարեն, Կորեայում զավթողական պատերազմ սկսելուց հետո, հասել են 307 դոլլարի։ Ամերիկյան մամուլի հաղորդագրությամբ, Տրումենը 6 տարի 2 ամսում՝ պրեզիդենտի պոստում գտնվելու ժամանակ հավաքել է 277 միլիարդ դոլլար հարկ, այն դեպքում, երբ նրա նախորդ բոլոր 31 պրեզիդենտները միասին վերցրած 156 տարվա ընթացքում հավաքել են 256 միլիարդ դոլլար հարկ։ Անգլիայում արդյունաբերական և պարենային ապրանքների գների բարձրացումը վերջին տարիներում հասել է երկրի պատմության մեջ չտեսնված չափերի։ Միայն 1951 թվականի առաջին կիսամյակում անգլիական կառավարությունը հրատարակել է 62 կարգադրություն մանրածախ գների բարձրացման մասին։ Մի տարվա ընթացքում, 1950 թվականի մայիսից մինչև 1951 թվականի մայիսը, յուղը թանկացել է 40 տոկոսով, կաթը՝ 46, ձուկը՝ 98 և հացը՝ 9 տոկոսով։ Անգլիայում գների բարձրացման հետ միաժամանակ կրճատվում են

*պատերազմի ժամանակից մնացած քարտային սիստեմով տրվող նորմաները։ Ֆրանսիայում արդյունաբերական ապրանքների գները 1938 թվականի համեմատությամբ աճել են 22, իսկ գյուղատնտեսական մթերքներինը՝ 19 անգամ։ Ահա թե ինչու ֆրանսիական բանվորի ռեալ աշխատավարձը 1938 թվականի համեմատությամբ իջել է ավելի քան 50 տոկոսով։ Աշխատավոր մասսաների կենսամակարդակն ավելի ցածր է մյուս կապիտալիստական պետություններում և առանձնապես ամերիկյան իմպերիալիզմի լծի տակ հեծող գաղութային ու կիսագաղութային երկրներում։*

*Սովետական ժողովուրդը, ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորները և ամբողջ աշխարհի առաջավոր մարդկությունը ՍՍՌՄ-ում գների նոր իջեցումը դիտում են որպես Սովետական կառավարության խաղաղասիրական քաղաքականության մի նոր ցայտուն արտահայտություն, կառավարություն, որը հետևողականորեն հանդես է գալիս հանուն կայուն խաղաղության*



*ամբողջ աշխարհում, հանուն ժողովուրդների միջազգային համագործակցության ու անվտանգության։*

*Վերջերս ամերիկյան թերթերի մի խումբ խմբագիրների հարցերին տված ընկեր Ստալինի պատասխաններում, նոր ուժով արտահայտվեցին Սովետական Միության ստալինյան արտաքին քաղաքականության՝ խաղաղության և ժողովուրդների համագործակցության ամրապնդման քաղաքականության հիմնական սկզբունքները։*

*Ի պատասխան բանվորների, գյուղացիների և ինտելիգենցիայի նյութական-կուլտուրական բարեկեցության նկատմամբ ցուցաբերված ջերմ հոգատարության, Սովետական երկրի աշխատավորները ամեն ջանք գործադրում են է՛լ ավելի ամրապնդելու մեր Հայրենիքի տնտեսական հզորությունը, կոմունիզմի կառուցման ստալինյան պլանը պատվով իրականացնելու համար։*

*Կ. ՌԻԴՈՒՄՅԱՆ*

---

## ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ 1952 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՆ

Ապրիլի 6—7-ը Երևանում տեղի ունեցավ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի երկրորդ սեսիան։ Ռեսպուբլիկայի Գերագույն Սովետը հաստատեց Հայկական ՍՍՌ 1952 թվականի Պետական բյուջեն և 1951 թվականի Պետական բյուջեի կատարման հաշվետվությունը, ընտրեց Գերագույն դատարան և հաստատեց Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրերը։

Ռեսպուբլիկայի 1951 թվականի Պետական բյուջեն կատարվել է եկամուտների գծով 106,7 և ծախսերի գծով՝ 102,0 տոկոսով, ըստ որում բյուջետային տարին փակվեց ծախսերի նկատմամբ եկամուտների 54.373 հազար ռուբլու գերազանցումով։ Պետական բյուջեի կատարման արդյունքների մեջ երևան են գալիս Սովետական Հայաստանի աշխատավորների ձեռք բերած



աննախընթաց նվաճումները արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրայի զարգացման ասպարեզում։

Ռեսպուբլիկայի աշխատավորները մեր մեծ Հայրենիքի ժողովուրդների հետ միասին, բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ, հաջողությամբ կատարեցին 1951 թվականի ժողովրդական տնտեսության զարգացման Պետական պլանը։ Ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկման պլանը ռեսպուբլիկան կատարեց 104 տոկոսով, կամ 1950 թվականի համեմատությամբ աճը կազմեց 18 տոկոս։

Նշանակալից հաջողություններ ձեռք բերեց ռեսպուբլիկայի կոլտնտեսային գյուղացիությունը ցանքատարածությունների ընդարձակման, բերքատվության բարձրացման և անասնաբուծության մթերատվությունը ավելացնելու բնագավառում։ 1951 թվականին ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովխոզներում մեքենա-տրակտորային կայանները 32 տոկոսով ավելի շատ տրակտորային աշխատանք կատարեցին, քան 1950 թվականին։ Անցյալ տարվա վերջին էլեկտրիֆիկացվել էր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների 74 տոկոսը։

# ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ 1952 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՆ

*Ապրիլի 6—7-ը Երևանում տեղի ունեցավ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի երկրորդ սեսիան։ Ռեսպուբլիկայի Գերագույն Սովետը հաստատեց Հայկական ՍՍՌ 1952 թվականի Պետական բյուջեն և 1951 թվականի Պետական բյուջեի կատարման հաշվետվությունը, ընտրեց Գերագույն դատարան և հաստատեց Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրերը։*

*Ռեսպուբլիկայի 1951 թվականի Պետական բյուջեն կատարվել է եկամուտների գծով 106,7 և ծախսերի գծով՝ 102,0 տոկոսով, ըստ որում բյուջետային տարին փակվեց ծախսերի նկատմամբ եկամուտների 54.373 հազար ռուբլու գերազանցումով։ Պետական բյուջեի կատարման արդյունքների մեջ երևան են գալիս Սովետական Հայաստանի աշխատավորների ձեռք բերած*



*աննախընթաց նվաճումները արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրայի զարգացման ասպարեզում։*

*Ռեսպուբլիկայի աշխատավորները մեր մեծ Հայրենիքի ժողովուրդների հետ միասին, բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ, հաջողությամբ կատարեցին 1951 թվականի ժողովրդական տնտեսության զարգացման Պետական պլանը։ Ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկման պլանը ռեսպուբլիկան կատարեց 104 տոկոսով, կամ 1950 թվականի համեմատությամբ աճը կազմեց 18 տոկոս։*

*Նշանակալից հաջողություններ ձեռք բերեց ռեսպուբլիկայի կոլտնտեսային գյուղացիությունը ցանքատարածությունների ընդարձակման, բերքատվության բարձրացման և անասնաբուծության մթերատվությունը ավելացնելու բնագավառում։ 1951 թվականին ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովխոզներում մեքենա-տրակտորային կայանները 32 տոկոսով ավելի շատ տրակտորային աշխատանք կատարեցին, քան 1950 թվականին։ Անցյալ տարվա վերջին էլեկտրիֆիկացված էր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների 74 տոկոսը։*

1951 թվականին հաջողությամբ իրականացվեց շինարարական, բնակարանային, կոմունալ և կուլտուրական աշխատանքների ծրագիրը: Միայն անցյալ տարի կառուցվել և շահագործման է հանձնվել ավելի քան 63,750 քառակուսի մետր բնակելի տարածություն: Բացի դրանից, անհատական վարկավորման կարգով կառուցվել է 2,142 բնակելի տուն: 1951 թվականին ռեսպուբլիկայում կապիտալ շինարարության ծավալը կազմում էր ավելի քան 769 միլիոն ռուբլի: Ընդարձակվել է դպրոցների, կուլտուր-լուսավորական հիմնարկների ցանցը, ավելացել է սովորողների թիվը: Տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարեզում ձեռք բերած հաջողություններում վառ կերպով դրսևորվում է սովետական հասարակական և պետական կարգի անհաղթահարելի մեծ ուժը, նրա գերազանցությունը կապիտալիստական կարգի նկատմամբ:

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի սեսիայի կողմից հաստատված 1952 թվականի Պետական բյուջեի եկամուտները կազմում են 1.279.175 հազար ռուբլի, ծախսերը՝ 1.276.998 հազար ռուբլի: 1951 թվականի հետ համեմատած բյուջեի ծախսերը ա-



վելանում են 95,1 միլիոն ռուբլով կամ 8,0 տոկոսով:

Ռեսպուբլիկայի Պետական բյուջեն, որը Սովետական Միության Պետական բյուջեի անբաժան մի մասն է կազմում, ամբողջությամբ ծառայում է խաղաղ շինարարության, ժողովրդական տնտեսության ծաղկման ու բարգավաճման, կոմունիզմի կառուցման նպատակներին: Պետական բյուջեի միջոցների խոշոր մասը հատկացվում է ժողովրդական տնտեսության զարգացմանը և սոցիալ-կուլտուրական միջոցառումներին: Այսպես, օրինակ, ժողովրդական տնտեսության զարգացմանը հատկացվում է 441,6 միլիոն ռուբլի, իսկ սոցիալ-կուլտուրական միջոցառումներին՝ 730,6 միլիոն ռուբլի, այսինքն 21,6 միլիոն ռուբլի ավել, քան անցյալ տարի: Այդ գումարից 499,7 միլիոն ռուբլի հատկացվում է ժողովրդական լուսավորության կարիքներին և առողջապահության միջոցառումներին՝ 165,4 միլիոն ռուբլի:

Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսու-

թյան զարգացման 1952 թվականի պետական պլանին համապատասխան, պետական բյուջեում հսկայական միջոցներ են հատկացվում կապիտալ ներդրումներին։ Այս տարի ռեսպուբլիկական և տեղական տնտեսության կապիտալ շինարարության ծավալը որոշվում է 256,2 միլիոն ռուբլի գումարով։ Բացի դրանից, ավելի քան 640,0 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ են կատարվելու միութենական ենթակայության ձեռնարկությունների գծով՝ միութենական բյուջեի հաշվին։ Այս տարի ռեսպուբլիկայում կառուցվելու և շահագործման են հանձնվելու նոր ֆաբրիկաներ, գործարաններ, էլեկտրակայաններ, դպրոցներ, կուլտուրայի պալատներ, հիվանդանոցներ, ակումբներ, կոմունալ ձեռնարկություններ և բնակելի շենքեր։ Պետական հատկացումների հաշվին կառուցվելու է 8,344 հազար քառ. մետր բնակելի տարածություն, իսկ պետության վարկավորման միջոցներով անհատական կարգով կառուցվելու և շահագործման է հանձնվելու 120 հազար քառ. մետր բնակելի տարածություն։

Խոշոր աշխատանք է կատարվելու ռեսպուբլիկայի քաղաքների, շրջկենտրոնների



և գյուղերի բարեկարգման, կանաչապատման ուղղությամբ։

Հայկական ՍՍՌ 1952 թվականի Պետական բյուջեն ժողովրդի բարեկեցության նըկատմամբ ցուցաբերվող ջերմ հոգատարության մի պերճախոս փաստաթուղթ է։ Այնտեղ հստակորեն դրսևորված է պարտիայի ու կառավարության անսահման հոգատարությունը ժողովրդի նկատմամբ։ Մեր բյուջեն խաղաղ, ստեղծագործ աշխատանքի բյուջե է։

Միանգամայն այլ բնույթ ունեն կապիտալիստական երկրների բյուջեները։ Իմպերիալիստական լագերի երկրներում, որոնց գլխավորում են Ամերիկայի Միացյալ Նահանգները, տեղի է ունենում սպառազինությունների կատաղի մրցավազք, որը կլանում է կապիտալիստական երկրների բյուջեի խոշոր մասը ։

Հայկական ՍՍՌ 1952 թվականի Պետական բյուջեն խորապես ժողովրդական է և այն լիովին ապահովում է ժողովրդական տնտեսության հետագա զարգացման, աշխատավորության բարեկեցության ու կուլտուրայի վերելքի ասպարեզում պարտիայի և կառավարության նախատեսած հսկայական միջոցառումների իրականացումը։

ՀՈՎՀ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

# ՊԱՅՔԱՐՈՒՄ ԵՆՔ ԲԱՐՁՐ ԲԵՐՔԻ ՀԱՄԱՐ

Բերիայի շրջանի կոլտնտեսությունները կազմակերպորեն-տնտեսապես ամրապնդելու գործում շնորհակալ աշխատանք է կատարում շրջանի ՄՏ կայանը։ ՄՏ կայանի մեխանիզատորների և կոլտնտեսականների անձնուրաց աշխատանքի շնորհիվ շրջանի դարերով անմշակ հողերը դարձել են խաղողի ու պտղատու ծառերի այգիներ, բանջարանոցներ, հացահատիկային և գյուղատնտեսական այլ կուլտուրաների բերրի տարածություններ։ Միայն վերջին երկու տարում յուրացվել է 500 հեկտար հողային նոր տարածություն։ Կոլտնտեսություններում գնալով մեծ չափերով ընդարձակվում է գյուղատնտեսական և անասնապահական աշխատանքների աշխատատար պրոցեսների մեքենայացումը։ Այժմ շրջանի հացահատիկային ցանքերի, այգիների ու բանջարա-



բոստանային կուլտուրաների մշակության ավելի քան 92 տոկոսը ենթարկված է մեքենայացման։ 1950 թվականին ՄՏ կայանն իր կողմից սպասարկվող կոլտնտեսությունների համար կատարում էր 27 տեսակի ագրոտեխնիկական աշխատանք, իսկ այժմ նա կատարում է 56 տեսակի ագրոտեխնիկական աշխատանք, որոնց թվում դաշտերի հարթեցում, միջնակների ու թմբերի վերացում, խաղողի այգիների միջշարային վար, միջշարային կուլտիվացիա, ժամանակավոր ջրողոգման առուների պատրաստում, խոտհունձ, առվույտի կալսում, աշնանացանի գարնան փոցխում, ոչխարների էլեկտրախուզ, կովերի էլեկտրակիթ և այլն։

Անցյալ գյուղատնտեսական տարում, ինչպես նաև այժմ, գարնանացանի օրերին, ՄՏ կայանը օրինակելի կերպով կատարեց կոլտնտեսությունների հետ ունեցած փոխադարձ պարտավորությունները, հատկապես ագրոտեխնիկական միջոցառումները ճիշտ ժամանակին կատարելու ուղղությամբ։ ՄՏ կայանը տրակտորային աշխատանքների 1951 թվականի տարեկան պլանը կատարել է 136 տոկոսով։ Փոխադարձ ստուգումները և մանավանդ մշակվող կուլտուրաներից

ստացված բարձր բերքատվությունը ցույց են տալիս, որ տրակտորային աշխատանքները կատարվել են որակով և ագրոտեխնիկական լավագույն ժամկետներում։ Շրջանի կոլտնտեսությունները բարեխղճորեն կատարել և այժմ կատարում են տիպային պայմանագրերով ստանձնված պարտավորությունները։

Նոր գյուղատնտեսական տարում ՄՏ կայանը լայն կազմակերպական աշխատանք է ծավալել և միաժամանակ ուժեղացրել է հսկողությունը գյուղատնտեսական կուլտուրաների մշակության նկատմամբ, որպեսզի կոլտնտեսություններում ագրոտեխնիկական կանոնների ոչ մի խախտում տեղի չունենա։

Այժմ մեծ չափով ավելացել է ՄՏ կայանի տեխնիկական զինվածությունը։ Վերջին երկու տարվա ընթացքում ՄՏ կայանն ստացել է ավելի քան մեկ միլիոն ռուբլու գյուղատնտեսական մեքենաներ, որով մի քանի անգամ ավելացել է ՄՏ կայանի տեխնիկական կարողությունը։ Դրա շնորհիվ լուրջ և պատասխանատու խնդիր է ծառացել ՄՏ կայանի աշխատողների առաջ՝ ավելի արդյունավետ օգտագործել գյուղատնտե-



սական մեքենաների ու գործիքների արտադրական կարողությունը։

ՄՏ կայանի մեխանիզատորները հատուկ ուշադրություն են դարձնում տնտեսապես թույլ կոլտնտեսությունների վրա, ուժեղացնելով այդ կոլտնտեսությունների տեխնիկական սպասարկումը։ Այսպես, օրինակ, Հաղթանակ գյուղի կոլտնտեսությունում 1949 թվականի համեմատությամբ այս տարի գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացումն ավելացել է 10 անգամ, Սպանդարյան գյուղի կոլտնտեսությունում՝ 15 անգամ, Բերիա ավանի Ստալինի անվան կոլտնտեսությունում՝ 10 անգամ, Անաստասավանում մոտ 4 անգամ և այլն։

Տնտեսապես թույլ կոլտնտեսություններին ցույց տրվող սիստեմատիկ օգնության շնորհիվ բարձրացավ այդ կոլտնտեսություններում մշակվող կուլտուրաների բերքատվությունը. հատկապես հացահատիկի բերքատվությունը։ Սպանդարյանի կոլտնտեսությունը 1951 թվականին նախորդ տարիների համեմատությամբ հացահատիկի յուրաքանչյուր հեկտարից 4 անգամ ավել բերք ստացավ, Հաղթանակի կոլտնտեսությունը՝ 2 անգամ, Անաստասավանի կոլ-

տնտեսությունը՝ 3 անգամ, Դավիթաշենի կոլտնտեսությունը՝ մեկ ու կես անգամ։

Օգտագործելով այս տարվա կլիմայական պայմանները, ՄՏ կայանը գարնան-գյուղատնտեսական աշխատանքներն արդեն կատարել է 50 տոկոսով, ընդորում լիովին կատարված է փոխադարձ այն պարտավորությունը, որը վերաբերում է գարնանացանի աշխատանքներին։ Սպանդարյանի կոլտնտեսությունում լրիվ ավարտված է հացահատիկի վարն ու ցանքը, այգետնկումների համար կատարված է 8 հեկտար պլանտաժ, խաղողի այգիների միջշարային վար 70 հեկտար տարածության վրա, աշնանացանի գարնան փոցխում և այլն։ Նոր Կյանք ավանի կոլտնտեսությունում ՄՏ կայանն ավարտել է բոլոր տեսակի գարնան գյուղատնտեսական աշխատանքները։ Գարնանացանն ավարտվել է նաև Դավիթաշենի, Անաստասավանի և Հաղթանակի կոլտնտեսություններում։

Անցյալ տարի, այս նույն ժամանակ շրջանի կոլտնտեսություններում կատարված էր ընդամենը 520 հեկտար պայմանական վար, իսկ այս տարի՝ 2343 հեկտար։

Այս օրերին ՄՏ կայանն արդեն կատարել



է 24 տեսակ գյուղատնտեսական աշխատանք։ Գարնանավարի պլանը կատարված է 112, կրկնավարինը՝ 80 տոկոսով, այգիների միջշարային վարինը՝ 100, խորը պլանտաժինը՝ 120, գծային պլանտաժինը՝ 105, նոր հողերի յուրացման պլանը՝ 30 տոկոսով և այլն։

Գարնան գյուղատնտեսական աշխատանքների հաջողությունը հետևանք է այն բանի, որ ժամանակին ու բարձր որակով վերանորոգվեցին տրակտորները, գյուղգործիքները, ճիշտ տեղաբաշխվեցին մեխանիզատորների ուժերը, խելացի ու մտածված կերպով կազմակերպվեց տրակտորների մարշրուտները, անխափան աշխատեցին տրակտորներն ու մյուս մեքենաները։

Գյուղատնտեսական աշխատանքների հաջողություններին մեծապես նպաստեց նաև այն, որ հատուկ ուշադրություն դարձվեց մեխանիզատորների որակավորումը բարձրացնելու վրա։ ՄՏ կայանի տրակտորիստներից 20 հոգի ավարտել են Երևանի Գյուղմեխանիզացիայի դպրոցը։ Նրանցից 2 հոգի այժմ աշխատում են որպես տրակտորային բրիգադի բրիգադիրներ։ ՄՏ կա-

*յանի բոլոր տրակտորիստները տարբեր ժամանակներում ավարտել են Երևանի Գյուղմեխանիզացիայի դպրոցը և բարձրացրել իրենց տեխնիկական որակավորումը։*

*Սիստեմատիկաբար իրենց տեխնիկական որակավորումը բարձրացնելու շնորհիվ ՄՏ կայանի մեխանիզատորները շատ կարճ ժամանակում յուրացրին «ՍՈՏ» սիստեմի տրակտորներն օգտագործելու եղանակը։ Այդ տրակտորներն արդյունավետ կերպով օգտագործվեցին գարնան փոցխումների, տեղական պարարտանյութի դաշտ տեղափոխման, կուլտիվացիա կատարելու և հատկապես նոր հողերի յուրացման կապակցությամբ քարերի տեղափոխման համար։*

*ՄՏ կայանում զգալի աշխատանք է կատարված տրակտորների խափանումները կանխելու և իսպառ վերացնելու համար, հարստացված է վերանորոգման արհեստանոցը նոր սարքավորումներով ու դազգահներով, կազմակերպված է շրջիկ արհեստանոց, բոլոր տրակտորային բրիգադների միջև ստեղծված է դիսպետչերական կապ, որը հնարավորություն է ստեղծել ժամանակին անհրաժեշտ տեխնիկական օգնություն ցույց տալու տրակտորային բրի-*



*գադներին և առանձին տրակտորիստներին։*

*Բարձր բերքի համար մղվող պայքարում աչքի ընկնող աշխատանք են կատարում ՄՏ կայանի առաջավոր տրակտորիստները։ Նրանք տրակտորային աշխատանքները կատարում են որակական բարձր ցուցանիշներով և օրինակ են հանդիսանում մյուս տրակտորիստների համար։ Տրակտորիստներից Ա. Մելքոնյանը գարնան գյուղատնտեսական աշխատանքների պլանը կատարել է 120 տոկոսով, Ա. Սարգսյանը՝ 130, Ս. Մաթևոսյանը՝ 110, Գ. Հովսեփյանը՝ 120, Ս. Հակոբյանը, 110, Մ. Պողոսյանը՝ 122 տոկոսով և այլն։*

*Այս մեխանիզատորների աշխատանքի դրական փորձն ամենից առաջ այն է, որ նրանք հետևողական աշխատանք են կատարում կոլտնտեսություններում մշակվող բոլոր կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու ուղղությամբ։ Նրանք տրակտորային բոլոր տեսակի աշխատանքները՝ ցելը, վարը, ցանքերի ընթացիկ մշակումը, այգիների միջշարային մշակումը, պլանտաժային աշխատանքները կատարում են սահմանված ժամկետներում։*

Գյուղատնտեսական աշխատանքների ագրոտեխնիկական մակարդակը բարձրացնելու շնորհիվ շրջանի կոլտնտեսությունները հացահատիկի առատ բերք են ստանում։ Առանձին կոլտնտեսություններ հացահատիկի յուրաքանչյուր հեկտարից ստացել են 25—30 ցենտներ բերք։

Ամրապնդելով նախորդ գյուղատնտեսական տարիներում ձեռք բերված հաջողությունները, Բերիայի ՄՏ կայանում լարված և եռանդուն աշխատանք է կատարվում 1952 թվականի գյուղատնտեսական տարում բոլոր կուլտուրաների գծով առավել բարձր բերք ստանալու համար։

Ա. ԽԱՉԱՏՐՅԱՆ

(Բերիայի շրջանի ՄՏ կայանի դիրեկտոր)



# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I. ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ 1952 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՆ

1. Հայկական ՍՍՌ 1952 թվականի Պետական բյուջեն ռեսպուբլիկայի էկոնոմիկայի, կուլտուրայի, աշխատավորության կենսամակարդակի անշեղ աճման վառ արտահայտությունն է։

2. Հայկական ՍՍՌ 1952 թվականի Պետական բյուջեն լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության փայլուն դրսևորումն է։

3. Սովետական պետական բյուջեն խաղաղ շինարարության, էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա վերելքի, աշխատավորության բարեկեցության բյուջե է։

4. Կապիտալիստական երկրների բյուջեները պատերազմի տենդագին նախապատրաստության, աշխատավոր մասսաների կողոպտման ու աղքատացման բյուջեներ են։

5. Պետական միջոցների խնայողությունը, պետական և աշխատանքային կարգապահության անշեղ

Գյուղատնտեսական աշխատանքների ագրոտեխնիկական մակարդակի բարձրացնելու շնորհիվ շրջանի կոլտնտեսությունները հացահատիկի առատ բերք են ստանում։ Առանձին կոլտնտեսություններ հացահատիկի յուրաքանչյուր հեկտարից ստացել են 25—30 ցենտներ բերք։

Ամրապնդելով նախորդ գյուղատնտեսական տարիներում ձեռք բերված հաջողությունները, Բերիայի ՄՏ կայանում լարված և եռանդուն աշխատանք է կատարվում 1952 թվականի գյուղատնտեսական տարում բոլոր կուլտուրաների գծով առավել բարձր բերք ստանալու համար։

Ա. ԽԱՉԱՏՐՅԱՆ
(Բերիայի շրջանի ՄՏ կայանի դիրեկտոր)

---



# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I. ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ 1952 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՆ

*1. Հայկական ՍՍՌ 1952 թվականի Պետական բյուջեն ռեսպուբլիկայի էկոնոմիկայի, կուլտուրայի, աշխատավորության կենսամակարդակի անշեղ աճման վառ արտահայտությունն է։*

*2. Հայկական ՍՍՌ 1952 թվականի Պետական բյուջեն լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության փայլուն դրսևորումն է։*

*3. Սովետական պետական բյուջեն խաղաղ շինարարության, էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա վերելքի, աշխատավորության բարեկեցության բյուջե է։*

*4. Կապիտալիստական երկրների բյուջեները պատերազմի տենդագին նախապատրաստության, աշխատավոր մասսաների կողոպտման ու աղքատացման բյուջեներ են։*

*5. Պետական միջոցների խնայողությունը, պետական և աշխատանքային կարգապահության անշեղ*

*պահպանումը ժողովրդական տնտեսության պլանների և պետական բյուջեի կատարման երաշխիքներն են։*

*6. 1952 թվականի պետական ֆինանսական պլանների կատարման համար պայքարելը մեր երկրի բոլոր աշխատավորների հայրենասիրական պարտքն է։*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Հայկական ՍՍՌ 1952 թվականի Պետական բյուջեի և 1951 թվականի Պետական բյուջեի կատարման մասին Հայկական ՍՍՌ ֆինանսների մինիստր Կ. Շեկոյանի զեկուցումը Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի երկրորդ սեսիայում: «Ս. Հ.» 1952 թվականի ապրիլի 7-ի համարում:

Ռեսպուբլիկայի Պետական բյուջեն: *«Ս. Հ.» 1952 թվականի ապրիլի 7-ի առաջնորդողը։*

Մեր ռեսպուբլիկայի 1952 թվականի Պետական բյուջեն: *«Ագիտատորի բլոկնոտ» 1952 թ. № 7։*

## ԾԱՎԱԼԵՆՔ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ ԿԱՌՈՒՑՈՂՆԵՐԻ ՇՐՋԱՆՈՒՄ

*1. Բնակարանային և կուլտուր-կենցաղային կառուցումների 1952 թվականի պլանները ժամկետից շուտ կատարելը շինարարության բնագավառի աշխատողների կարևորագույն խնդիրն է։*

*2. Պայքարը աշխատանքի արտադրողականության բարձրացման, շինարարական աշխատանքների որակի բարելավման և ինքնարժեքի իջեցման համար՝*



*կառուցողների սոցիալիստական պարտավորությունների հիմքն է։*

*3. Կառուցման աշխատանքների գրաֆիկի ճիշտ պահպանումը, յուրաքանչյուր բանվորի, բրիգադի կողմից արտադրական պլանի գերազանց կատարումը— շինարարական պլանները ժամկետից շուտ կատարելու լավագույն երաշխիքն է։*

*4. Լայնորեն ծավալենք սոցիալիստական մրցությունը արագ կառուցման տեխնիկայի, շինարարության, վարպետների առաջավոր փորձի տիրապետման և արմատավորման համար։*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Բարձրացնել պարտիական աշխատանքի մակարդակը շինարարական ձեռնարկներում: *«Ս. Հ.» փետրվարի 26-ի առաջնորդողը։*

ՍՍՌՄ 1952 թվականի Պետական բյուջեի մասին և ՍՍՌՄ 1950 թվականի Պետական բյուջեի կատարման մասին ՍՍՌՄ ֆինանսների մինիստր Ա. Գ. Զվերևի զեկուցումը: *«Ս. Հ.» մարտի 7-ի համարում։*

Սոցիալիստական մրցությունը և ագիտատորների խնդիրները *«Ագիտատորի բլոկնոտ» 1952 թ № 4։*

---

Պատ. խմբագրի տեղակալ՝
Տ. ՎԱՐԺԱՊԵՏՅԱՆ

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б)
Армении
**БЛОКНОТ АГИТАТОРА**

7 1952 г.

ՎՖ 03445 Պատվեր № 331 Տիրաժ 10.000

Հայպոլիգրաֆհրատի II տպարան, Երևան,
Կնունյանցի փ. № 8. 1952 թ.։